# CLASSICAL ARMENIAN BIBLE: THE ZOHRAB BIBLE

Edited by Dr H. Zohrabian



## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ
### ՄԱՏԵԱՆ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ԸՍՏ
ՃՇԳՐԻՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ
ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ
'Ի ՀԵԼԼԵՆԱԿԱՆՆ ՀԱՒԱՍՏԱՐՄԱԳՈՅՆ ԲՆԱԳՐԷ
'Ի ՀԱՅԿԱԿԱՆՍ ԲԱՐԲԱՌ։

*Նորոգապէս 'ի լոյս ընծայեալ
յընտրելագոյն գրչագիր գաղափարէ՝
Համեմատութեամբ այլևայլ օրինակաց,
Հանդերձ կարևոր ծանօթութեամբք բնաբանին:*

Յաշխատասիրութենէ տեառն
Տ. Յովհաննու Զօհրապեան Վարդապետի,
'ի միաբանութենէ Մեծին Մխիթարայ
Րաբունապետի և առաջին Աբբայի:



*Տպագրեալ Հրամանաւ Տ.Տ. Ստեփաննոսի Ագոնց
Աստուածապատիւ Արհիեպիսկոպոսի,
և Առաջնորդի Ուխտին՝ Սրբոյն Ղազարու:*

## THE BIBLE
### OLD AND NEW TESTAMENTS

ACCORDING
TO THE ACCURATE TRANSLATION
OF OUR ANCESTORS
FROM THE MOST RELIABLE GREEK TEXT
INTO THE ARMENIAN LANGUAGE.

Newly published from the best manuscript,
with a comparison of various exemplars,
with important annotations to the text.

*On the basis of the work of
Rev. Doctor Fr. Hovhann Zohrabian,
of the Congregation of the Great Mechitar,
Pontif and first Abbot.*

Published by order of the Very Rev. Stepannosi Agonts,
Honoured Venerable Bishop
and Prelate of the Congregation of St. Lazarus.

Revised edition edited by Tigran A. Aivazian (Erevan, 2016)





1805 'Ի ՎԵՆԷՏԻԿ. ՌՄԾԴ
'Ի Գործարանի Սրբոյն Ղազարու:

1805 VENICE
At the Press of St. Lazarus.

զգեօղս որ էին 'ի նոսա. և կազմեցին և եդին անդ
զդարմանս 'ի գործ պատերազմի. զի ընդ այն ժամանակս
էին հնձեալ զանդս նոցա: 5 Եւ գրեաց Յովակիմ քահա-
նայ մեծ՝ որ էր յաւուրսն յայնոսիկ յԵրուսաղէմ, բնակչաց
Բատիղուայ, և Բետոմեսթեայ, որ է ընդդէմ Եզրոմելայ,
ընդդէմ դաշտին՝ որ է մերձ առ Դովթայիմ. 6 և ասէ. Ե-
լէք կալէք զանցս լեռնային կողմանն: Զի ընդ այն էին
մուտք 'ի Հրէաստան. և էր դիւրին նոցա արգելուլ զնո-
սա, քանզի նեղ էին անցք կրճից՝ զոր կարէին պահել արք
երկու: 7 Եւ արարին որդիքն Իսրայէլի՝ որպէս և հրամայ-
եաց նոցա Յովակիմ քահանայ մեծ, և ծերակոյտք ժո-
ղովրդեանն Իսրայէլի որ նստէին յԵրուսաղէմ: 8 Եւ կարդա-
ցին առ Տէր ամենայն այր Իսրայէլի՝ յամենայն սրտէ իւր-
եանց. Եւ խոնարհեցուցին զանձինս իւրեանց՝ ինքեանք և
կանայք իւրեանց. 9 և ամենայն պանդուխտք և վարձկանք՝
հանդերձ անասնօք իւրեանց պաշարեցան, և արծաթագին
ծառայք նոցա արկին քուրձ զմիջովք իւրեանց: 10 Եւ ամե-
նայն այր Իսրայէլի կանամբք և մանկամբք իւրեանց որ
բնակեալ էին յԵրուսաղէմ, 'ի գունս իջեալ առաջի տաճա-
րին Տեառն աղաչէին, և արկին մոխիր զգլխովք իւրեանց,
և թօթափէին զքուրձսն առաջի Տեառն, և զսրբութեան
սեղանօքն քուրձ արկանէին. և կարդացին նոքա առ Աստ-
ուած Իսրայէլի 'ի միասին յամենայն սրտէ, զի մի մատ-
նեսցէ 'ի յափշտակութիւն զտղայս նոցա յաւար, և զկա-
նայս նոցա յաւար, և զքաղաքս ժառանգութեան նոցա յա-
պականութիւն, և զսրբութիւնն 'ի պղծութիւն և 'ի նախա-
տինս՝ և յայպն հեթանոսաց: Եւ լուաւ Տէր ձայնի նոցա,
և ետես զնեղութիւնս նոցա. և էր ժողովուրդն 'ի պահս
բազումս ընդ ամենայն Հրէաստան և յԵրուսաղէմ առաջի
սրբութեանցն Տեառն ամենակալի: 16 Եւ Յովակիմ քահա-
նայ մեծ՝ և ամենեքեան որ կային առաջի Տեառն՝ քա-
հանայք և պաշտօնեայքն Տեառն քուրձ զգեցեալ էին, և
մատուցանէին զողջակէզս հանապազորդս և զաղօթս, և
զկամաւ յօժարութեանն, և զպատարագս ժողովրդեանն:
17 Եւ էր մոխիրն 'ի վերայ վարշամակաց նոցա որ կայր 'ի
վերայ գլխոց նոցա. և գոչէին առ Տէր յամենայն սրտէ
իւրեանց, յայցելութիւն և 'ի բարիս առնել տանն Իսրայէ-
լի:

5 Եւ պատմեցին Հողոփեռնեայ զօրագլխի զօրացն Ասուր,
եթէ որդիքն Իսրայէլի պատրաստեցան 'ի պատերազմ, և
զանցս լեռնային կողմանցն փակեցին, և պարսպեցին զա-
մենայն գլուխս լերանց բարձանց, և թաքուցին 'ի դաշտս
որոգայթս: 2 Եւ բարկացաւ յոյժ Հողոփեռնէս բարկութեամբ
մեծաւ. և կոչեաց նա զամենայն իշխանսն Մովաբայ, և
զզօրագլուխսն Ամոնայ, և զամենայն նախարարս ծով-
եզերեայս. 3 և ասէ ցնոսա. Պատմեցէք դուք ինձ որ-
դիք Քանանու, ո՞վ են ժողովուրդս այս որ նստին 'ի
լեռնակողմանս. և զի՞նչ քաղաքք են յորում բնակեալ են
սոքա՝ և կամ բազմութիւն զօրա՞ց նոցա. և ի՞ւ է ոյժ նոցա
և կամ զօրութիւն. կամ ո՞վ է թագաւոր նոցա և առաջ-
նորդ զօրաց նոցա: 4 Եւ ընդէ՞ր թիւրեցին զմիտս իւրեանց,
զի մի՛ եկեսցեն ընդ առա՛ջ իմ. այլ հպարտացան քան զա-
մենայն բնակիչս արեւմտեայցս: 5 Եւ ասէ ցնա Աքիովր ա-
ռաջնորդ ամենայն որդւոցն Ամոնայ. Լուիցէ տէր բանից
ծառայի քո, և պատմեցից քեզ զճշմարիտն՝ վասն ժո-
ղովրդեանդ որ բնակեալ են 'ի լեռնակողմանդ յայդմ որ
մերձ առ քե՛զս է. և ո՛չ ինչ ելանէ ստութիւն 'ի բերանոյ
ծառայի քոյ: 6 Ժողովուրդս այս են յազգէ Քաղդեացւոց. 7 և
պանդխտեցան զառաջինն 'ի Միջագետս. զի ո՛չ կամեցան
պաշտել զդիս հարց իւրեանց յերկրին Քաղդեացւոց. 8 և ե-
լին նոքա 'ի հայրենի երկրէն իւրեանց. և երկի՛ր պագին
Աստուծոյ երկնաւորի զոր ճշմարտեալ ծանեան: Եւ եկեալ
գնացին նոքա 'ի Միջագետս՝ և պանդխտեցան անդ ա-
ւուրս բազումս. և ասէ ցնոսա Աստուածն նոցա՝ ելանե՛լ նո-
ցա 'ի պանդխտութենէն և գալ յերկիրս Քանանու. և բնա-
կեցին անդ, և մեծացան ոսկւով և արծաթով՝ և անասնով
բազմով: 9 Եւ իջին նոքա յԵգիպտոս, քանզի եղև սով յերկ-
րին Քանանացւոց, և պանդխտեցան անդ մինչև մնան, և
եղեն անդ բազում յոյժ. և ո՛չ էր թիւ ազգի նոցա: 10 Եւ
յարեաւ 'ի վերայ նոցա արքայն Եգիպտացւոց չարչարե՛լ
զնոսա ցաւովք, և աղիւսովք, և արկին զնոսա 'ի ծառա-
յութիւն: 11 Եւ կարդացին նոքա առ Աստուած իւրեանց, և
եհա՛ր նա զերկիրն Եգիպտացւոց հարուածովք անբժշկու-
թեան. և հալածեցին հանին զնոսա Եգիպտացիքն յերեսաց
իւրեանց. 12 Եւ ցամաքեցո՛յց Աստուած զծո՛վն Կարմիր առա-
ջի նոցա, 13 և ած զնոսա 'ի ճանապարհն Սինայ, և 'ի Կա-
դէսբառնեայ. և հանին զամենայն բնակիչս անապատին.
14 և բնակեցուցին յերկրին Ամովրհացւոց. և զամենայն զԵ-
սեբովնացիս սատակեցին զօրութեամբ իւրեանց: Եւ անցին
նոքա ընդ Յորդանան, և ժառանգեցին զամենայն երկիրն.
20 և մերժեցին հանին յերեսաց իւրեանց զՔանանացին, և
զՓերեզացին, և զՅեբուսացին, և զՍիւքեմ, և զամենայն
Գերգեսացիս, և բնակեցին յերկրին աւուրս բազումս: 21 Եւ
մինչ ո՛չ մեղանչէին առաջի Աստուծոյն իւրեանց՝ էր ընդ
նոսա ամենայն բարութիւն. զի Աստուած որ ատեայ զան-
իրաւութիւն՝ էր ընդ նոսա: 22 Եւ յորժամ 'ի բա՛ց մերժեցին
յիւրեանց զճանապարհս ուխտին Աստուծոյ, սատակեցան
'ի պատերազմունս բազումս յոյժ. և գերեցան յերկիր օ-
տար որ ո՛չ իւրեանց էր. և տաճարն Աստուծոյ իւրեանց
եղև 'ի կործանումն. և քաղաքք նոցա մատնեցան 'ի ձեռս
թշնամեաց նոցա: 23 Եւ այժմ դարձան առ Տէր Աստուած
իւրեանց՝ և ժողովեցան 'ի գերութենէ իւրեանց ուր էին
ցրուեալք, և կալան զքաղաքն զԵրուսաղէմ ուր էր սրբու-
թիւնն. և բնակեցին 'ի լեռնակողմանն, զի էր աւերակ:
24 Եւ արդ այժմ տէր, եթէ անգիտութիւն ինչ լինի 'ի ժողո-
վրդեան նոցա, և մեղանչիցեն Աստուծոյ իւրեանց, ակնկալ-
եալ սպասեսցուք այսմիկ, զի այս է նոցա գայթագղութիւն.
և ապա գումարեսցուք 'ի վերայ նոցա, և տացուք 'ի վե-
րայ նոցա պատերազմ: 25 Ապա թէ չիցէ՛ ինչ նոցա անիրա-
ւութիւն առ Աստուածն իւրեանց՝ զա՛նց արասցուք առ նո-
քօք տէր. գուցէ պաշտպանիցէ նոցա Տէր Աստուածն իւր-
եանց, և լինիցիմք մեք յամօթ նախատանաց ամենայն երկ-
րի: 26 Եւ եղև իբրև դադարեաց Աքիովր 'ի խօսելոյ զբանս
զայս, տրտնջեաց ամենայն բանակն որ շուրջ զխորանաւն:
27 Եւ ասեն իշխանքն ցՀողոփեռն, և որ բնակիչքն էին ծով-
եզերեայց և Մովաբացւոց, զի պատուհասեսցէ զԱքիովր.
Զի ո՛չինչ երկնչիմք մեք յորդւոցն Իսրայէլի. ժողովուրդ որ
ո՛չ ունի կա՛ր ինչ զօրութեան պատերազմի: 28 Արդ՝ ելցո՛ւք
մեք, և լիցին նոքա կերակուր ամենայն զօրաց քոց տէր
Հողոփեռն:

6 Եւ յորժամ դադարեցին 'ի խօսելոյ իւրեանց, որ շուրջ
էին զխորանաւն իւրեանց. և ասէ Հողոփեռնէս զօրա-
գլուխ զօրացն Ասուր՝ ցԱքիովր, առաջի ամենայն զօ-
րացն այլազգեաց. Ո՞վ ե՛ս դու Աքիովր, որ դիմակա՛ց
ես ժողովրդեանն այլազգեաց ամենեցուն՝ և առ որդիս
Մովաբայ, և որ վարձկանքս են յԵփրեմայ. 2 զի մարգա-
րէացար մեզ որպէս և օրս այս, և ասես եթէ մի՛ տա-
ցուք պատերազմ ընդ որդիսն Իսրայէլի. զի Աստուածն
նոցա պաշտպանէ նոցա. և ո՞վ է Աստուած բաց 'ի Նա-
բուքոդոնոսորայ: Նա՛ առաքէ զզօրութիւն իւր, և սատա-
կէ զնոսա յերկրէ. և ո՛չ փրկէ զնոսա Աստուածն նոցա:
3 Այլ մեք ծառայք նորա վանե՛մք զնոսա իբրև զայր մի.
և ո՛չ կարասցեն կա՛լ ընդդէմ հեծելազօր երիվարաց մե-
րոց, և ջնջեսցո՛ւք զնոսա նոքօք. և զլերինս նոցա արբու-
ցանե՛մք յարենէ նոցա. և դաշտք նոցա լցցին դիակամբք
նոցա. և ո՛չ ևս կարասցեն կալ առաջի մեր, այլ կորնչելով
կորնչիցին. 4 ասէ արքայ Նաբուքոդոնոսոր տէր ամենայն
երկրի. քանզի ասաց՝ և ո՛չ ընդունայնասցան բանք բերա-
նոյ նորա: 5 Այլ դու Աքիովր վարձկան Ամոնայ՝ և խօսեցար
զբանս զայս յանիրաւութեան քում. և ո՛չ ևս յաւելցես տե-
սանել զերեսս իմ յօրէս յայսմանէ մինչև խնդրեցից վրէժ
յազգէն որ յԵգիպտոսէն ելին. և ապա՛ անցցէ սուր զօրաց
իմոց ընդ կողս քո. 6 և կործանեսցիս ընդ վիրաւորս բա-
զումս յորժամ դարձայց: Այլ այժմ դարձուսցեն զքեզ ծա-

6 Ոմանք. Զի էին նեղք անցք: 8 Ոմանք. Եւ կարդային առ Տէր: 9 Ոմանք. Եւ վարձկանք իւրեանց: 10 Ոմանք. 'Ի գունս իջեալ առաջի Տեառն... և թօթափեցին զքուրձսն: Ոսկան. Զտղայս նոցա և զկանայս նոցա յաւար: 16 Ոմանք. Եւ ամենեքեան որ կացին առաջի: 5.1 Ոմանք. 'Ի դաշտ որո՛: Ոսկան. 'ի դաշտի: 3 Ոմանք. Բնակեալ են նոքա... և կամ ո՞վ է թա՛: 5 Ոսկան. 'Ի կողմանդ յայդմ: 8 Ոսկան. Եւ անասնով բազմաւ:

13 Բազումք. 'Ի ճանապարհ Սինեայ 'ի Կադէսբառնեայ: 14 Ոմանք. Եւ ժառանգեցին նոքա զամենայն եր՛: 22 Ոմանք. Որ ո՛չ էր իւրեանց: 26 Ոմանք. Որ շուրջ էին զխորա՛: 27 Ոմանք. Ոչ ունին ինչ կարի զօրութիւն 'ի պատերազմի: 28 Ոմանք. Եւ լինիցին նոքա... զօրաց մերոց: 6.1 Ոմանք. Եւ յորժամ դադարեցին 'ի խօսելոյ իւրեանց. որ էին շուրջ զխորա՛: 2 Ոմանք. Եւ սատակէ զնոսա յերեսաց երկրէ: 3 Ոմանք. Եւ ո՛չ ևս կարիցեն կալ... այլ կորնչելով կորիցեն: 5 Այլք. Որ խօսեցար զբանս... սուր զօրացս իմոց:

ռայք իմ’ի լեռնակողմն` և պաՀեսցեն զքեզ յանցս քաղաքի
միոյ որ յանցս ճանապարՀացն է, և մի՛ կորնչիցիս մինչև
սատակեսցիս նոքօք Համդերձ. և եթէ յուսաս սրտիւ քով
եթէ ո՛չ մատնին` յայդ ինչ մի՛ վստա՛Հ լինիցիս. զի խօսեցայ
և ո՛չ անցանէ բան մի ’ի բանից իմոց: [7]Եւ ետ Հրաման Հո-
ղոփեռնէս ծառայից իւրոց որ կային առաջի նորա, կապե՛լ
զԱքիովր, և տանել զնա ’ի Բետիուղա, և մատնել զնա ’ի
ձեռս որդւոցն Իսրայէլի: [8]Եւ կալան զնա ծառայք նորա, և
ածին զնա արտաքոյ բանակին ’ի դաշտ անդր, և գնացին
նոքա ’ի դաշտէ անտի, և եկին ’ի լեռնակողմն աղբերցն ’ի
ներքոյ Բետիուղայ, որ է Շամրին: Եւ իբրև տեսին զնոսա
արք քաղաքին ’ի վերայ գլխոյ լերինն, առին նոքա զզէնս
իւրեանց և յարձակեցան ’ի վերայ նոցա ’ի գլուխ լերինն.
և ամենայն այր պարսաւոր կալան զելս նոցա և քարաձի՛գ
արարին ’ի վերայ նոցա: [9]Եւ մտին նոքա ընդ լեռնոտամբն,
և կապեցին զԱքիովր, և ընկեցին զնա առ լեռնոտինն. և
նոքա գնացին դարձան առ տէրն իւրեանց: [10]Եւ իջին որ-
դիքն Իսրայէլի ’ի քաղաքէ անտի և Հասին ’ի վերայ նորա`
և լուծին զնա, և տարան ’ի Բետուղա. և կացուցին զնա
ընդ իշխանս քաղաքին իւրեանց [11]որք էին յաւուրսն յայնո-
սիկ` Ոզիա որդի Միքեայ յազգէ Շմաւոնի, և Քարմի որ-
դի Եղքիէլի: [12]Եւ ժողովեցին զամենայն զծերս քաղաքին` և
զամենայն երիտասարդս, և զամենայն կանայս յեկեղեցին.
և կոչեցին զԱքիովր ’ի մէջ ամենայն ժողովրդեանն. և Հար-
ցանէր զնա Ոզիա, եթէ` Վասն էր եղև ընդ քեզ այդ անցք:
Եւ նա տա՛յր պատասխանի, և պատմէր զբանս խորՀրդոյն
Հողոփեռնեայ. և զամենայն բանսն զոր խօսեցաւ ինքն ’ի
մէջ իշխանացն որդւոցն Ասուր. [13]զոր ինչ միանգամ մեծա-
բանեալ խօսեցաւ Հողոփեռնէս վասն տանն Իսրայէլի: [14]Եւ
’ի գո՛ւճս իջեալ ամենայն ժողովուրդն երկրին երկիր պա-
գանէին Աստուծոյ, աղաղակէին և ասէին. [15]Տէր Աստուած
երկնից` տե՛ս զամբարտաւանութիւն նոցա, և ողորմեա՛ց
խոնարՀութեան ազգիս մերում, և նայեա՛ց ’ի սրբութիւն
քո Տէր յաւուրս յայսմիկ: [16]Եւ աղաչեցին: Եւ մխիթարե-
ցին զԱքիովր, և գովեցին յոյժ զնա: [19]Եւ ա՛ռ զնա Ոզիա
յեկեղեցւոյ անտի և տարա՛ւ ’ի տուն իւր. [20]և արար նմա
կոչունս ծերոցն և քաՀանայիցն: Եւ կարդացին զգիշերն
զայն ամենայն առ Տէր Աստուած Իսրայէլի:
7 Եւ ’ի վաղիւ անդր պատուիրեաց Հողոփեռն զօրաց
իւրոց, և ժողովեցան որ եկեալն էին նմա յօգնականու-
թիւն, չուել գնա՛լ ’ի Բետիղուա, և ’ի վերայ ելից լեռ-
նակողմանն, և Հասանե՛լ տալ պատերազմ ընդ որդիսն
Իսրայէլի: [2]Եւ կազմեցան պատրաստեցան` գնացին յա-
ւուրն յայնմիկ, ամենայն այր պատերազմի, և ամենայն
Հետևակազօր պատերազմողացն Հարիւր եւթնասուն Հա-
զար, և Հեծելազօրքն վառեալք երկոտասան Հազար. թող
զայլ ռամիկն ամենայն, և զկա՛Հ և զկարասի բազում սաս-
տիկ յոյժ: [3]Եւ բանակեցան նոքա ’ի Հովիտն որ մե՛րձ էր ’ի
Բետիուղա ’ի վերայ աղբերն. և Հանին զառաջս բանակացն
ընդ Հարաւակողմն ’ի լայնութիւն մինչև ’ի Դովթայիմ, մին-
չև ’ի Բեղբեմ. և յերկայնութիւն ’ի Բետիղուա մինչև ’ի
Կիամ, որ է ընդդէմ Յեզրայելովմայ, ա՛յս ինքն է Յեզրայէլ:
[4]Եւ որդիքն Իսրայէլի իբրև տեսին զա՛յնչափ բազմութիւնն
խռովեցան յոյժ, և ասեն ա՛յր ցընկեր իւր. Այժմ լիզո՛ւն նո-
քա զամենայն երեսս երկրի, և ո՛չ լերինք բարձունք, և ո՛չ
ձորք և բլուրք կարասցեն կա՛լ առաջի զօրութեան դոցա:
[5]Եւ առին որդիքն Իսրայէլի ա՛յր իւրաքանչիւր զզէն իւր, և
լուցանէին ջաՀս ’ի վերայ աշտարակացն քաղաքին, և կա-
յին պաՀէին զամենայն գիշերն զայն: [6]Եւ յաւուրն երկրորդի
եՀան Հողոփեռնէս զամենայն զՀեծելազօրն դէմ յանդիման
որդւոցն Իսրայէլի որ էին ’ի Բետիղուա, և Հաս նա ’ի վե-
րայ ելից քաղաքին նոցա, և զաղբերս ջրոցն քննեաց, և
աճապարէր պաշարել զնոսա. և Հարկանէր ’ի վերայ նո-
ցա բանակս բանակս յարանց պատերազմողաց. և ինքն
չուէր գնայր անդրէն ’ի բանակն իւր: [8]Եւ մատեան առ նա
ամենայն որդիքն Ամովսայ, և ամենայն ժողովք և առաջ-
նորդք որդւոցն Մովաբու, և զօրագլուխք ծովեզերեայցն` և
ասեն. [9]Լուիցէ՛ բանից ծառայից իւրոց Տէր մեր, զի մի՛
լիցին Հարուածք զօրաց քոց. զի ժողովուրդ որդւոցս Իս-
րայէլի ո՛չ են յուսացեալ ’ի նիզակս իւրեանց, և ո՛չ ’ի զէնս,
այլ ’ի վերայ լերանց բարձանց իւրեանց յորում բնակ-
եալ են ’ի նոսա. ո՛չ իսկ Հնա՛ր է Հասանել ’ի նոսա: Եւ
արդ Տէր` մի՛ տար դու ընդ նոսա մարտ պատերազմի`
որպէս և լինի պատերազմ. և ո՛չ անկցի մի այր ’ի զօ-
րաց քոց. այլ Հանդարտեա՛ և մնա՛ դու ’ի բանակիս քում,
և ապրեցուսցես դու զզօրս քո. այլ կալցին ծառայք քո
զաղբերս ջուրցն որ ելանէ ’ի լեռնոտանէ անտի. քանզի
անտի՛ ըմպեն ամենայն բնակիչք քաղաքիդ. և սատակին
նոքա ’ի ծարաւոյ, և ապա ինքեա՛նք իսկ մատնեսցեն զքա-
ղաքն ’ի ձեռս քո. և ամենայն զօրավարօք մերովք ելա-
նեմք ’ի վերայ լերանց բարձանց որ մերձաւորքս իցեն,
և բանակեսցուք ’ի վերայ նոցա իբրև զայր մի. քանզի
սպառեսցին նոքա ’ի սովոյ և ծարաւոյ, ինքեա՛նք և կա-
նայք իւրեանց և որդիք իւրեանց մինչչև՛ եկեալ իցէ ’ի վե-
րայ նոցա սուր. տապա՛ստ անկցին ’ի Հրապարակս քա-
ղաքին իւրեանց, և Հատուսցես նոցա զՀատուցումն չարու-
թեան նոցա. փոխանակ զի ’ի կռի՛ւ կացին և ո՛չ Հնա-
զանդեցան քեզ խաղաղութեամբ: [10]Եւ Հաճո՛յ թուեցաւ խոր-
Հուրդն` Հողոփեռնեայ և ամենայն ծառայից նորա, և Հրա-
մա՛ն ետ առնել որպէս և խօսեցանն: Եւ գնաց բանակ որդ-
ւոցն Ամոնայ, և ընդ նոսա Հազարք Հինգ յորդւոցն Ասուր,
և բանակեցան նոքա ’ի ձոր Հովտին, և Հասին կալան նո-
քա զաղբերս ջուրցն զորդւոցն Իսրայէլի: Եւ ելին որդիքն
Եսաւայ, և որդիքն Ամոնայ, և բանակեցան ընդ կողմն լե-
րինն ընդդէ՛մ Դովթայիմայ. և առաքեցին ’ի նոցանէն ’ի
Հարաւակողմն կոյս` և ընդ Հիւսիսի ընդդէ՛մ Եգրեբիղայ`
որ է մերձ ընդ Քուշ, որ է ’ի վերայ ձորոյն Քումուրայ:
Եւ այլ զօրք Ասորեստանեայցն բանակեցան ’ի դաշտին`
և ծածկեցին զամենայն երեսս երկրին: Եւ այլ ռամիկքն`
կաՀիւ և կարասով և խորանօք Համդերձ բանակեցան ան-
դէն բազում մեծութեամբ: Եւ որդիքն Իսրայէլի գոչեցին
առ Տէր Աստուած իւրեանց, զի զաՀի Հարեալ սպառեալ
էին ոգիք նոցա. քանզի պատեալ պաշարեալ էր զնոսա
թշնամեաց նոցա. և ո՛չ ինչ էր Հնար նոցա ելանել ’ի միջոյ
նոցա. և կացին պաշարեցին զնոսա զօրքն Ասուրայ զինու
կառօք և երիվարօք իւրեանց զաւուրս երեսուն և չորս:
[11]Եւ լքան պարտասեցան ամենայն բնակիչք Բետիղուայ. և
ամենայն ամանք նոցա սպառեալ էին ’ի ջրոյ, և գուբք
սպառեալ թափեալ էին. և ո՛չ գոյր ըմպելի միում աւուր, և
զոր ըմպէին չափով և կշռով ըմպէին: [12]Եւ ’ի վարանի և ’ի
տարակուսի կային կանայք և մանկունք նոցա. և երիտա-
սարդք նոցա լքեալ էին ’ի ծարաւոյ, և գլորեալք կային ընդ
Հրապարակս քաղաքին, և ընդ անցս դրանցն. և ո՛չ ուստեք
էր նոցա մխիթարութիւն: Եւ ժողովեցան ամենայն ժողո-
վուրդն ’ի վերայ Ոզիայ` և ’ի վերայ իշխանաց քաղաքին,
երիտասարդք և կանայք և մանկտին, և լացին նոքա ձայ-
նիւ մեծաւ, և ասեն առաջի ամենայն ծերոց ժողովրդեանն.
[13]Դա՛տ արասցէ Աստուած ’ի մէջ մեր և ’ի մէջ ձեր, զի ա-
րարէք առ մեզ իրս անիրաւութեան, առ ’ի չխօսելոյ ձեր
’ի խաղաղութիւն ընդ որդիսն Ասուր: [14]Եւ արդ ո՛չ ոք է որ
օգնէ մեզ, այլ մատնեաց զմեզ Աստուած ’ի ձեռս նոցա, զի
տապա՛ստ անկցուք մեք առաջի նոցա, և ’ի կորուստ մե-
ծի ծարաւոյ: [15]Արդ այժմ աղաչեցէ՛ք դուք զնոսա, և տո՛ւք
յաւար նոցա զքաղաքս ամենայն: [16]Զի լա՛ւ է մեզ լինել ’ի
յափշտակութիւն նոցա և ’ի ծառայութիւն` և կեցցեն ան-
ձինք մեր. քանզի ո՛չ կարեմք տեսանել զմաՀ տղայոց և
զկանանց աչօք մերովք, զի պակասեալ սպառեալ են ոգիք
նոցա: [17]Արդ վկայե՛մք ձեզ առաջի երկնից և երկրի, և Աս-
տուծոյ Հարցն մերոց որ խնդրէ զվրէժ անձանց մերոց, և
ըստ մեղաց Հարցն մերոց. զի մի՛ արասցէ ըստ բանիցս այ-
սոցիկ յաւուրս յայսոսիկ: [18]Եւ եղև լալումն և ողբումն մե՛ծ
’ի վերայ եկեղեցւոյն ամենեցուն ’ի միասին, և գոչեցին
նոքա առ Տէր Աստուած ձայնիւ մեծաւ: [23]Եւ ասէ ցնոսա

6 Ոմանք. Քաղաքի միում... մի՛ վստաՀասցիս. զի խօսեցայ և ո՛չ անցցէ բան մի: 7 Ոմանք. Որք կացին առաջի նորա, ունել և կապել զԱ՛՛: 8 Ոսկան. Եւ քարձիգ արարին: 11 Ոմանք. Եւ Քարմի որդի Մեղքիէլի: 12 Ոմանք. Եւ Հարցանէր ցնա... զբանս խորՀրդոցն: 20 Ոմանք. Եւ արար նա կոչունս: 7.3 Ոմանք. ’Ի Հովտին որ է... որ էր ընդդէմ... այսինքն Յեզրայէլ: Այլք. Եւ Հարին զառէջս բանակացն: 4 Ոմանք. Այժմ լեզուն նոքա: 5 Ոսկան. Եւ կային և պաՀէին զայն: 6 Ոմանք. Եւ զաղբիւր ջուրցն քննեաց:

8 Յօրինակին պակասէր. Եւ ամենայն ժողովք և առաջնորդք: 9 Ոմանք. Ընդ նոսա պատերազմ մարտի, և ո՛չ անկցի մի այր ’ի զօրաց քոց: Այլք. Եւ ապրեցուցանես դու: Ոմանք. ԶՀատուցումն չարութեան իւրեանց: 10 Ոսկան. Եւ գնացին յորդւոցն Ամմոնայ, և ընդ նոսա Հա՛՛: Ոմանք. Մերձ ’ի Քուշ, որ է ’ի վերայ ձորոյն Քումարայ: Յօրինակին պակասէր. Կառօք և երիվարօք իւրեանց: 13 Ոմանք. ’Ի մէջ մերում և ’ի մէջ ձեր: 14 Ոմանք. Առաջի նորա, և ’ի կոր՛՛: Ոսկան. ’Ի կորուստ մեծ ’ի ծարաւոյ: 17 Ոմանք. Յաւուրս յայսմիկ: 18 Ոմանք. Եւ ողբումն մեծ յեկեղեցւոյն:

Ոզիա. Քաջալերեցարո՛ւք եղբարք, և համբերեցէ՛ք աւուրս
ևս հինգ, յորում աւուր առաքէ Տէր զողորմութիւն իւր 'ի
վերայ մեր. 24զի ո՛չ թողու նա զմեզ 'ի սպառ. 25և յորժամ
անցանիցեն ա՛յս աւուրք, և ո՛չ եկեսցէ 'ի վերայ մեր օգ-
նութիւն՝ արարի՛ց ձեզ ըստ բանիցս այսոցիկ: Եւ արձակ-
եաց զժողովուրդս 'ի տունս իւրեանց. և յաշտարակս և 'ի
պարիսպս քաղաքին զգուշանալ 'ի թշնամեացն: Եւ էին 'ի
վարանս և 'ի մեծ տարակուսանս:

8 Եւ լուաւ յաւուր յայնմիկ Յուդիթ դուստր Մերար-
եայ. որդւոյ Ոքոզեայ. որդւոյ Յովսեփու. որդւոյ Ոզիելեայ.
որդւոյ Եղ̃կիեայ. որդւոյ Եղ̃իեսու. որդւոյ Քեղկեայ. որդ-
ւոյ Եղիաբու. որդւոյ Նաթանայելի. որդւոյ Սամամիեղեայ.
որդւոյ Սարա Սադդէ. որդւոյ Իսրայէլի: 2Եւ այր նորա Մա-
նասէ՝ յազգէ նորուն, և 'ի հայրենեաց նորա: Եւ մեռա՛ւ
այր նորա յաւուրս հնձոց գարեաց. 3զի կա՛յր նա 'ի վե-
րայ հնձողաց իւրոց 'ի դաշտին. զի յընթանալ խորշակին
և գա՛լ հասանել 'ի վերայ գլխոյ նորա. յորմէ և մեռաւ
իսկ 'ի Բետիղուա 'ի քաղաքի իւրում. և թաղեցաւ նա առ
հարս իւր յագարակին որ մե՛րձ էր առ Դովթայիմն, և 'ի
Բաղամոն: 4Եւ նստէր Յուդիթ այրի՛ 'ի տան իւրում ա՛մս
երիս և ամիսս չորս: 5Եւ արար նա տաղաւար 'ի տանիս
տանն իւրոյ. և ած քուրձ 'ի վերայ միջոյ իւրում. և էր
արկեալ զիւրև հանդերձ այրութեան. 6և պահէր նա՝ զա-
մենայն աւուրս այրութեանն իւրոյ. բայց միայն զօր շա-
բաթուն և զամսամտից և զտարեկանացն, և զուրախու-
թեան տանն Իսրայէլի: 7Եւ է՛ր նա գեղեցիկ յոյժ տեսա-
նելով. և եթող նմա Մանասէ այր նորա ոսկի և արծաթ,
ծառայս և աղախնայս, և անդս և ագարակս, և անա-
սուն. և ինքն Յուդիթ դարմանէր զայն: 8Եւ ո՛չ ոք ինչ ա-
սէր վասն նորա բա՛ն չարութեան. զի երկիւղա՛ծ էր նա յոյժ
'ի Տեառնէ: 9Եւ իբրև լուաւ նա զբանն ժողովրդեանն զոր
խօսեցան ապիրատութեամբ ընդ իշխանին. զի պակասեալ
էին նոքա 'ի ծարաւոյ. և լուաւ Յուդիթ զբանսն Ոզիայ
զոր խօսեցաւ ընդ ժողովուրդսն, և որպէս վկայեա՛ց նո-
ցա՝ մատնել զքաղաքն յետ հինգ աւուրն 'ի ձեռս Ասորես-
տանեացն: Եւ առաքեաց զնաժիշտն իւր՝ որ էր 'ի վերայ
ամենայն ընչից իւրոց, և կոչեաց զՈզիայ, և զՔաբրին, և
զՔարմին, և զծերս ամենայն քաղաքին իւրոյ. 10և եկին առ
նա: Եւ ասէ ցնոսա. Լուարուք ինձ բնակիչք Բետիղուայ,
զի ո՛չ ուղիղ են բանք ձեր զոր խօսեցարուք առաջի ժո-
ղովրդեանդ յաւուրս յայսմիկ. և երդմամբ հաստատեցէք
զոր խօսեցարուքն առաջի Աստուծոյ 'ի միջի ձերում, և
ասացէք մատնել զքաղաքս 'ի ձեռս թշնամեաց մերոց, եթէ ո՛չ Տէր առաքէ զօգնականութիւն մեզ: 11Եւ արդ դուք
որ փորձէքդ զԱստուած յաւուրս յայսմիկ. արդ հաստատ-
եալ կայ այդ 'ի մէջ որդւոց մարդկան: 12Եւ ահա այժմ
զՏէր զամենակալ ո՛չ հարցէք, և ո՛չ ինչ գիտացէք. 13զի
խորութիւն սրտի մարդոյ ո՛չ գտանի, և բանից սրտից նո-
ցա ո՛չ հասանէք. զիա՞րդ զԱստուած որ արա՛ր զայս ամե-
նայն քննել մարթիցէք, և զկամս նորա գիտիցէք, և կամ
'ի խորհուրդս նորա հայիցիք. քա՛ւ լիցի ձեզ եղբարք. մի՛
բարկացուցանիցէք զՏէր Աստուած մեր: 14Եթէ ո՛չ կամիցի
յաւուրս հինգ օգնել մեզ. նա ունի զիշխանութիւնն. յորս
կամի պաշտպա՛ն լինի մեզ յորում և իցէ, և կամ սատա-
կե՛լ զմեզ առաջի թշնամեաց մերոց: 15Այլ դուք մի՛ գրաւէք
'ի ձեզ զխորհուրդս Տեառն Աստուծոյ ձերոյ. զի ո՛չ որ-
պէս մարդո՛յ է Աստուծոյ սպառնալիք, և ո՛չ որպէս որդ-
ւոյ մարդոյ զի տանջէ: 16Այլ այժմ կացեալ ա՛կնկալցուք
գտանե՛լ 'ի նմանէ զողորմութիւն, աղաչեսցո՛ւք և կարդաս-
ցուք առ նա յօգնականութիւն մեզ. և լուիցէ՛ ձայնի աղօ-
թից մերոց՝ եթէ իցէ նմա հաճոյ: 17Զի ո՛չ երբէք յարուց-
եալ է այդպիսի 'ի վերայ ազգիս մերոյ, և ո՛չ լեա՛լ է այդ-
պիսի մինչև ցայսօր, ո՛չ յազգիս մերում, և ո՛չ 'ի տոհմի
մերում, և ո՛չ 'ի ժողովրդեան մերում, և ո՛չ 'ի քաղաքս
մեր: Ո՛չ պագանեն երկիր ձեռագործաց 18որպէս եղև յա-
ւուրսն առաջինս. վասն որոյ մատնեցան 'ի սո՛ւր և 'ի
յափշտակութիւն հարքն մեր, և կործանեցան կործանումն
մե՛ծ առաջի թշնամեաց իւրեանց: 19Այլ մեք զա՛յլ Աստուած
ո՛չ գիտացաք բա՛ց 'ի նմանէ յոր յուսամքն զի ո՛չ անտես
առնէ զմեզ. 20և ո՛չ զազգս մեր մատնել այսպէս՝ որպէս
և ուխտեցէք դուք. և կամ աւա՛ր հարկանել զորութիւնս
մեր. և կամ թէ չխնդրիցէ զվրէժ անարգանաց թշնամեաց
սրբութեանս, և զմա՛հ զեղբարցս մերոց, և զգերութիւն երկ-
րիս, և զաւերումն ժառանգութեանս մերոյ դարձուցանէ 'ի
գլուխս մեր, յամենայն հեթանոսս՝ ուր և ծառայիցեմք նո-
ցա. և եղիցուք յամօթ և 'ի նախատինս առաջի այնոցիկ
որոց ստացեալն իցէ զմեզ: Զի ո՛չ ուղղեսցի ծառայութիւնս
մեր նոցա յուրախութիւն, այլ յանարգութիւն և 'ի կոր-
ծանումն նոցա արասցէ զմեզ Տէր Աստուած մեր: 21Եւ
արդ եղբարք՝ ցուցցո՛ւք մեք եղբարց մեր, զի 'ի մե՛զ կան
կախեալ ոգիք նոցա, և սրբութիւնքն և սեղանն՝ և տա-
ճարն հաստատեալ կայ 'ի մեզ: Եւ արդ՝ 'ի վերայ ամե-
նայնի այսորիկ գոհացարուք զԱստուծոյ մերմէ, որ փորձէն
զմեզ, որպէս և զհարսն մեր: 22Յիշեցէ՛ք՝ ո՞րչափ արար
ընդ Աբրահամուն, և ո՞րպէս արար ընդ Սահակայ, և կամ
ընդ Յակոբայ 'ի Միջագետս Ասորւոց, 'ի հովուել նորա
խաշանցն Ղաբանու եղբօր մօր իւրոյ: 23Զի ո՛չ եթէ որ-
պէս զնոսայն փորձեաց առ 'ի ճանաչել զխորհուրդս սրտից
նոցա, և զմեր մեղս ո՛չ խնդրեսցէ. այլ 'ի խրատե՛լ և
ուսուցանե՛լ տանջէ Տէր զմերձաւորս իւր: 28Եւ ասէ ցնա
Ոզիա. Զամենայն զոր ինչ ասացերդ՝ 'ի լրութենէ սրտի և
'ի բարւոք մտէ խօսեցար, և ո՛չ ոք է որ ընդդէմ դառնայ
բանից քոց. զի ո՛չ միայն այսօր յայտնեցաւ իմաստութիւնդ
քո, այլ յաւուրցն առաջնոց գիտաց ամենայն ժողովուրդդ
զհանճարդ քո. վասն զի բարւոք են ստեղծուածք սրտի
քոյ: Այլ ժողովուրդս ծարաւեաց յոյժ, և հա՛րկ եղև մեզ
առնել՝ որպէս և խօսեցաք ընդ դոսա. և ածել 'ի վերայ
մեր զերդումն զորով ո՛չ կարեմք անցանել: 29Արդ աղաչ-
եա՛ դու խնդրուածովք զԱստուած, զի կին արդա՛ր ես դու,
և առաքեսցէ՛ Տէր զանձրև՝ և լցցին գուբքս, և ո՛չ ևս
պակասեսցուք: 30Եւ ասէ ցնոսա Յուդիթ. Լուարո՛ւք դուք
ինձ. և արարից ես իրս մի, որ պատմեսցի ազգաց մին-
չև յազգս, և որդւոց մինչև յորդիս: 32Դուք կացջի՛ք առ
դրան քաղաքիս՝ զգիշերս զայս, և ելից ես նաժշտաւս ի-
մով. և յաւուրս յայս յոր ուխտեցէք մատնել զքաղաքս զայս
'ի ձեռս թշնամեաց մերոց, այցելո՛ւ լիցի Տէր Աստուած 'ի
ձեռն իմ: 33Եւ դուք մի՛ քննէք զգործս իմ զոր գործելոց
եմ. քանզի ո՛չ իսկ ասացից ձեզ, մինչև կատարեսցի այն
զոր ե՛մ առնելոց: 34Եւ ասէ Ոզիա՝ իշխանօքն հանդերձ ցնա.
Գնա՛ դու 'ի խաղաղութիւն. և Տէր Աստուած Իսրայէլի ե-
ղիցի ընդ քեզ խնդրե՛լ զվրէժ 'ի թշնամեաց մերոց: Եւ նո-
քա դարձան 'ի տաղաւարէ անտի Յուդթայ յիւրաքանչիւր
տեղիս պահպանութեան պարսպացն:

9 Եւ անկաւ Յուդիթ 'ի վերայ երեսաց իւրոց. և 'ի բա՛ց
առ զքուրձն որ զգեցեալ էր ինքեան, և ցանեաց մոխիր
'ի վերայ գլխոյ իւրոյ: Եւ էին 'ի նմին ժամու խունկք
մատուցեալք երեկոյինք յԵրուսաղէմ 'ի տաճարին Տեառն:
Եւ կարդաց նա ձայնիւ մեծաւ առ Տէր Աստուած. և ա-
սէ Յուդիթ. 2Տէր Աստուած հօրն իմոյ Շմաւոնի, որում
ետո՛ւր զսուրն 'ի ձեռն խնդրել զվրէժն յայլազգեաց, 3որք
լուծին զարգանդ կուսին 'ի պղծութիւն, և մերկացուցին
զանդամս 'ի նախատինս, և խայտառակեցին զկուսու-
թիւնն 'ի թշնամանս. որ ո՛չ եղեն հաճոյ առաջի քո. վասն
որոյ ետուր իսկ զիշխանս նոցա հանդերձ անկողնովքն ո-
րով դատապարտեցանն յարիւն. և սատակեցեր զծառայսն

---

25 Այլք. Եւ ո՛չ եկեսցեն 'ի վերայ մեր... և արձակեաց զժողո-
վուրդն: Ո–ր Ոսկան. 'Ի վերայ մեր օգնութիւնք՝ արա՛: 8.1 Ոսկան
յաւելու. Որդւոյ Եղ̃կիայ, որդւոյ Անանիայ, որդւոյ Գեդէոնի,
որդւոյ Ռափայի. որդւոյ Եղիեսու: 2 Այլք. Եւ այրն նորա: 3 Յօ-
րինակին պակասէր. Զի կայր նա 'ի վերայ: 5 Ոմանք. 'Ի վերայ
միջոյ իւրոյ: 9 Այլք. Զբանս ժողովրդեանն: Ոմանք. Զոր խօսե-
ցաւ նա ընդ ժողովուրդսն յետ հինգ աւուր: Յօրինակին ընդ այ-
լոց գրչագրաց յայսմ վայրի դնի վրիպակս. Եւ զՔաբրին և
զՔամրին: 11 Ոմանք. Որ փորձեցէքդ զԱստուած: 12 Ոմանք. ԶՏէր
զամենակալ հարցէք, և ո՞: 13 Ոմանք. 'Ի սրտի մարդոյ ո՛չ գտա-
նի... ո՛չ հասանիցէք: 14 Բազումք. Օգնել ձեզ... պաշտպան լինել
մեզ: 16 Այլք. Արդ այժմ կացեալ:

17 Այլք. Եւ ո՛չ եղեալ է այդպիսի: Ոմանք. Ոչ պագան եր-
կիր ձեռա՞: 18 Ոսկան. 'Ի կործանումն մեծ: 20 Ոմանք. Մատնել՝
որպէս և ուխտե՞: Բազումք. Եւ եղիցուք մեք յամօթ: 21 Ոմանք.
Ցուցցուք մեք եղբարց մերոց... գոհասցուք զԱստուծոյ մերմէ: 22
Ոմանք. Ընդ Աբրահամու: Յօրինակին այսպէս գրի. Որպէս արար
ըն Սահակ՞: Ո–ր ընդօրինակողն 'ի լուս. նշանակէ 'ի ներքս բե-
րել՝ դ. և առնել՝ ընդ: 28 Ոմանք. Զամենայն ինչ զոր ա՞: Ոս-
կան. Եւ 'ի բարւոք մտաց խօ՞: Այլք. Եւ խօսեցաք ընդ նոսա: 29
Յօրինակին. Եւ ո՛չ և պակասեսցուք: 30 Ոմանք. Եւ որդւոց մինչև
յորդւոց որդիս: 34 Ոմանք. Եւ ասէ ցնա Ոզիա իշ՞: 9.1 Ոմանք.
Զգեցեալ էր յինքեան: Բազումք. Մատուցեալք երեկորինք:

Հանդերձ տերամբք իւրեանց, և զՀարսն 'ի վերայ աթոռոց
իւրեանց. և ետուր զկանայս նոցա յաւար, և զդստերս
նոցա 'ի գերութիւն. և զամենայն զաւարն 'ի բաժինս
որդւոց սիրելեաց քոց որ նախանձեցան զնախանձ քո.
և գարշանս Համարեցան զպղծութիւն քեռն իւրեանց, և
կարդացին զքեզ յօգնականութիւն: Եւ արդ Տէր Աստուած
իմ, լո՛ւր ձայնի աղախնոյ քոյ, և նայեաց 'ի խնդրուածս
այրւոյս. [4]զի դու՛ արարեր զայն յառաջ ընդ նոսա, և յետ
այնորիկ, և այժմ, և որ գալոցն է զայն դու՛ խորՀեցար.
և որ եղև որպէս և կամեցար, և յանդիմա՛ն եղեն քեզ
որպէս և խորՀեցար: [5]Եւ ասացին. ԱՀաւասիկ մեք. զի
ամենայն ճանապարՀք քո պատրա՛ստ են, և դատաս-
տանք քո կանխագէ՛տք են: [6]Զի աՀաւասիկ Ասորեստան-
եայն ելին զօրօք իւրովք զերկիրս. և բարձրացան Հեծե-
լովք երիվարացն, և Հպարտացեալ մեծամտեաց 'ի բա-
զուկ Հետևակացն բազմութեան, և յուսացան 'ի նիզակս
և 'ի սպառազինութիւնս, և 'ի կորովս աղեղնաւորացն
և պարսաւորացն. և ո՛չ գիտացին թէ դու՛ Տէր ես որ
խորտակես զպատերազմունս, և Տէր է անուն քո: Փրկեա՛
զմեզ 'ի նեղութենէս: [11]Եւ ցրուեա՛ զզօրութիւնս նոցա Տէր
ամենակալ. և խորտակեա՛ ընկեա՛ զզօրութիւնս նոցա բար-
կութեամբ քով. զի կամեցան պղծել զսրբութիւնս քո և
զյարկս անուան բնակութեան փառաց քոց, և կործանել
երկաթով զեղջերս սեղանոյ սրբոյ քոյ: [12]Նայեա՛ց և տես
զամբարտաւանութիւնս նոցա, և առաքեա՛ զբարկութիւնս
քո 'ի վերայ գլխոց նոցա. և տո՛ւր ձեռն աղախնոյ քոյ,
և այրւոյս զօրութիւն՝ զոր խորՀեցայս առնել. [15]և Հա՛ր
կործանեա՛ զծառայն խաբանօք շրթանց իմոց, և զիշխանն
ծառայիւքն իւրովք. և խորտակեա՛ զպաստկութիւն նոցա 'ի
ձեռն կնոջս: [16]Զի ո՛չ եթէ 'ի բազմութենէ է քո զօրութիւնդ.
և ո՛չ կարրդ քո յայնս է որ Հզօրքն են. այլ խոնարՀա՛ց
ես Տէր Աստուած, և կարօտելո՛ց ես օգնական, տկարա՛ց
ես ընդունելութիւն, կարօտելո՛ց ես խնդրակ, անյուսի՛ց ես
փրկիչ: [17]Այո՛ Աստուած Հօրն իմոյ, և Աստուած ժառան-
գութեանն Իսրայէլի. Տէր երկնից և երկրի, արարի՛չ ջուրց.
թագաւո՛ր ամենայն ստացուածոց քոց դու՛ ես: [18]Լո՛ւր աղօ-
թից աղախնոյ քոյ. տո՛ւր ինձ բանս զի խօսեցա՛յց զնոսա 'ի
կործանումն նոցին՝ որ եկեալ են 'ի վերայ կտակարանաց
քոց, և 'ի վերայ տան քոյ՝ և բարձունս Սիոնի, և 'ի վե-
րայ բնակութեան որդւոց քոց, զի խորՀեցան զխորՀուրդս
խի՛ստս. [19]և ծանո՛ զբարձր բազուկ քո ժառանգութեան քոյ,
եթէ դու՛ ես Աստուած՝ որ տիրես ամենայն զօրութեանց և
իշխանութեանց. զի ո՛չ ոք է որ պաշտպան լինի ազգիս
Իսրայէլի բա՛ց 'ի քէն Տէր:

10 Եւ իբրև դադարեաց Յուդիթ յաղօթից իւրոց, և
կատարեաց զբանս զայս. և յո՛տն եկաց յերեսացն
խոնարՀելոց. [2]և կոչեաց զնաժիշտն իւր, և էջ 'ի տուն
իւր նա ուր կատարէր զաւուրս շաբաթուց, և զաւուրս
տօնիցն: [3]Մերկացա՛ւ յիւրմէ զքուրձն զոր զգեցեալն էր,
և 'ի բա՛ց եՀան զՀանդերձս այրութեան իւրոյ, և լուաց
զմարմինս իւր ջրով, և օծա՛ւ իւղով անուշիւ. և եՀիւս զՀեր
գլխոյ իւրոյ, և կապեաց զապարաշն 'ի ճակատ իւր. և
զգեցա՛ւ զՀանդերձ ուրախութեան իւրոյ, զոր զգենոյր առ
կենդանութեամբ առն իւրոյ Մանասէի. [4]և ագանէր կօշիկս
ոսկեզօծս. և արկանէր ապարանջանս 'ի ձեռս իւր, և ար-
կանէր քայռս յականց պատուականաց ընդելուզեալս մար-
գարտով 'ի պարանո՛ց իւր, և մատանիս 'ի մատունս իւր,
և զգորշապաՀանգս 'ի գլուխ իւր. և յօրինէր կազմէր ա-
մենայն զարդու իւրով, և պայծառանայր առաւել յոյժ առ
'ի խաբել և պատրել զամենեսին 'ի գեղ երեսաց իւրոց՝ որ
տեսանիցեն զնա: [5]Եւ ետ ցաղախինն իւր զմախաղն. և
ելից զնա փոխնդով և պաղատակօք և Հացիւք սրբովք. և
զՀադաղակն գինւոյ, և զսրուակն իւղոյ. և սրբէր կազմէր
զամենայն ըստ օրինին իւրեանց, և տա՛յր ցաղախինն իւր:
[6]Եւ ելի՛ն նոքա ընդ դուռն քաղաքին Բետիղուայ. և տե-
սին անդ զՈզիա զի կա՛յր առ դրանն՝ և զայլ քաՀանայս
քաղաքին ընդ նմա, և զՔաբրին, և զՔարմին: [7]Եւ իբրև
տեսին նոքա զՅուդիթ՝ զի էր փոխեալ նորա զգեղ երե-
սաց իւրոց՝ և զգեստ Հանդերձին իւրոյ, զարմացան նոքա
ընդ գեղ նորա յոյժ: [8]Եւ ասեն ցնա. Աստուած Աստուած
Հարցն մերոց տացէ՛ քեզ շնորՀս, և կատարեսցէ՛ զկամս
սրտի քոյ 'ի ցնծութիւն և յուրախութիւն որդւոցն Իսրայէլի,
և 'ի բարութիւն Երուսաղեմի: Եւ երկի՛ր պագին Աստուծոյ:
[9]Եւ ասէ ցնոսա Յուդիթ. Հրամայեցէ՛ք ինձ բանա՛լ զդրունս
քաղաքիս, զի ելից ես՝ կատարե՛լ զբանս զոր խօսեցայք
ընդ իս: Եւ Հրամայեցին դռնապանացն բանա՛լ, որպէս և
խօսեցանն՝ և արարին ա՛յնպէս: [10]Եւ ել Յուդիթ ինքն և
աղախինն իւր ընդ նմա: Եւ մի՛տ դնէին նմա արք քաղա-
քին յերթալն նորա, մինչև եղև նա ընդ լերամբն, մինչև
անց նա ընդ ծործոր Հովտին. և ապա ո՛չ ևս տեսին զնա:
[11]Եւ է՛րթային նոքա ընդ ծործոր Հովտին ուղի՛ղ ընդ ճանա-
պարՀն: Եւ պատաՀեցին նոցա պաՀապանքն Ասորեստան-
եայցն, [12]և կալան զնոսա. Հարցին և ասեն. Ո՞յր ես դու՝
և ուստի՛ գաս, կամ յո՞ երթաս: Եւ ասէ ցնոսա Յուդիթ.
Դո՛ւստր եմ ես Եբրայեցւոց, և փախուցեալ եմ ես յերեսաց
նոցա, զի մատնելո՛ց են նոքա 'ի կերակուր ձեզ. [13]և ես եկի
կա՛լ առաջի Հողոփեռնեայ իշխանի զօրաց ձերոց՝ պատ-
մե՛լ նմա զբանս ճշմարտութեան, և ցուցանե՛լ նմա զճանա-
պարՀն ընդ որ երթայցէ, և տիրեսցէ ամենայն լեռնային
կողմանցն. և ո՛չ միում ումեք լիցի վնա՛ս 'ի զօրաց դորա:
[14]Եւ իբրև լուան արքն զբանս Յուդթայ, և նայեցան նոքա
յերեսս նորա, և էր առաջի նոցա գեղեցկութիւն յոյժ. և ա-
սեն ցնա. [15]Ապրեցուցեր դու զանձն քո այսօր. արդ փութա՛
դու իջանել տեսանե՛լ զերեսս տեառն մերոյ, և մատիցե՛ս
դու առ խորան նորա մեւք Հանդերձ, և տացուք զքեզ 'ի
ձեռս նորա: [16]Եւ յորժամ կացցես առաջի նորա, մի՛ երկնչի-
ցիս 'ի սրտի քում, այլ պատմեսցե՛ս դու նմա ըստ բանիցդ
այդոցիկ. և բարի՛ արասցէ քեզ: Եւ ընտրեցին յիւրեանց
արս Հարիւր՝ և յղեցին ընդ նմա: Եւ ածին զնոսա 'ի խո-
րանն Հողոփեռնեայ. և պատմեցին զգեղեցկութիւն նորա,
և զգալն՝ յամենայն բանակին. և գային 'ի տեսանել զնա
մինչդեռ կա՛յր արտաքոյ խորանին Հողոփեռնեայ, մինչդեռ
պատմէին Հողոփեռնեայ. [17]և զարմանային յոյժ ընդ գե-
ղեցկութիւն նորա, և ընդ ամենայն որդւոցն Իսրայէլի: [18]Եւ
ասեն այր ցընկեր իւր. Իսկ արդ ո՞ կարէ չար ինչ խոր-
Հել 'ի վերայ ազգիս այսորիկ որք ունին զայդպիսի գե-
ղեցկութիւն կանայք նոցա: Արդ՝ ո՛չ պարտին ապրել արք
նոցա, զի եղիցին դստերք նոցա մեզ կնութեան. զի թէ
ապրեն՝ վնա՛ս են նոքա ամենայն երկրի: Եւ ելին սպասա-
ւորքն Հողոփեռնեայ և ամենայն ծառայք նորա, և տա-
րան զնա 'ի խորանն: [19]Եւ Հողոփեռն նստէր 'ի գաՀոյն
իւր. և էր փակեալ զնա վարագուրօք շուրջանակի. զորս
էր ընդելուզեալ ոսկւով և մարգարտով՝ և ակամբք պատ-
ուականօք: Եւ իբրև լուա՛ւ նա զՅուդթայ, ե՛լ նա արտաքս
'ի սրա՛Հ խորանին ջաՀիւք և լապտերօք արծաթեօք, քան-
զի գիշե՛ր էր: [20]Եւ իբրև ետես զնա Հողոփեռնէս, զարմա-
ցա՛ւ ընդ տեսիլ գեղոյ նորա: Եւ անկեալ 'ի խոնարՀ երկի՛ր
պագանէր Յուդիթ Հողոփեռնեայ. և կանգնեցին զնա ծա-
ռայք նորա:

11 Եւ ասէ ցնա Հողոփեռնէս. Համարձակեա՛ց կին դու, և
մի՛ երկնչիր. զի ես ո՛չ չարչարեմ զմարդ որ կամի ծառա-
յել Նաբուքոդոնոսորայ արքայի որ տիրէ ամենայն երկ-
րիս: [2]Եւ արդ՝ ժողովուրդ քո այդ՝ որ բնակեալդ է 'ի
լեռնակողմանդ, եթէ ո՛չ էր ապստամբեալ դոցա յինէն, ո՛չ
էր իմ առեալ զնիզակ իմ 'ի վերայ դոցա. այլ դոքա ինք-
եա՛նք արարին անձանց իւրեանց զայս: [3]Արդ՝ ասա՛ դու
ինձ, վասն որո՞յ ես դու փախուցեալ 'ի նոցանէն, և եկեալ
ես առ մեզ. քաջալերեա՛ց զի 'ի փրկութիւն եկեալ ես, զի
կենդանի՛ ես 'ի գիշերիս յայսմիկ, և զամենայն աւուրս քո,
և ո՛չ ոք է որ վնասէ՛ քեզ. այլ բարի՛ լիցի քեզ, որպէս և լինի
ծառայից տեառն իմոյ Նաբուքոդոնոսորայ: [4]Եւ ասէ ցնա
Յուդիթ. Ընկա՛լ զբանս աղախնոյ քոյ, և խօսեսցի աղախին
քո առաջի քո. և ո՛չ ինչ ստութիւն պատմեմ տեառն իմում
'ի գիշերիս յայսմիկ: Եթէ զՀետ եկեսցես և լուիցես բանից

---

4 Այլք. Եւ եղև որպէս և կամեցար: 11 Ոմանք. Զեղջիւրս սեղա-
նոյ: 16 Ոսկան. Եւ ո՛չ կարրդ քո յայնս է: Ոմանք. Որք Հզօրագոյնքն
են... անյուսաց ես փրկիչ: 17 Յօրինակին՝ Արարիչ ջուրց, կար-
միրագունով նշանակի: Ոմանք. Թագաւոր ամենայն ստեղծուածոց
քոց: 18 Բազում–մք. Եւ բարձուն Սիովնի: Ն– օրինակ մի. Եւ 'ի
բարձուն Սի": 19 Ոմանք. Զբարձր բազուկ ժառան": 10.4 Ո-
մանք. Եւ արկանէր քառս... և զգարշապարՀանգս 'ի գլ"... որ
տեսանիցեն զնա: 5 Ոմանք. Եւ ետ ցաղախինն զմախաղ իւր...
և պաղատկօք... և զՀանդաղակն գինւոյ... ըստ օրինի իւր"... և
տայր յաղախինն իւր:

7 Ոմանք. Հանդերձին նորա, և զար": 12 Ոմանք. Եւ կամ ուստի՛
գաս: 13 Ոմանք. Ընդ որ գնայցէ և տիրես": 14 Ոմանք. Եւ նայեցան
ընդ երեսս նորա: 15 Ոսկան. Դու 'ի խորան նորա մեօք Հան": 18
Ոմանք. Որ ունին զայսպիսի գե": Յօրինակին. Եւ ելին պարսա-
ւորք Հողոփեռ": 19 Ոմանք. Ընդելուզեալ մարկւով և մարգարտով
և ակ": Ոսկան. Եւ լապտերօք արծաթեղինօք: 11.3 Ոմանք. Որ
վնասէ 'ի քեզ:

իմոց՝ և ՚ի բարձրութիւն Երուսաղեմի. 7 զի այժմ է ժա-
մանակ այց առնել քեզ ժառանգութեան քում, և առնել
զգործս զայս ՚ի ձեռս իմ, ՚ի սատակումն թշնամեաց մե-
րոց որք յարուցեալ են ՚ի վերայ մեր: 8 Եւ մատեաւ առ
քանոն գահոյիցն, որ էր ընդ մնարմն Հողոփեռնեայ, և ե-
հան զդաշոյն նորա յազդերէ նորա. 9 և կալաւ զհերաց նո-
րա՝ և ասէ. Զօրացո զիս Աստուած Իսրայէլի յաւուրս յայս-
միկ: 10 Եւ եհար ՚ի պարանոցի նորա երկիցս զօրութեամբ
իւրով: Եւ հատեալ եբարձ զգլուխ նորա. 11 և թաւալեցոյց
ընկէց զմարմին նորա ՚ի գահոյից անտի: Եւ յետ ժամու
միոջ՝ել և ետ նաժշտին իւրում զգլուխն Հողոփեռնեայ.
12 և ընկէց ՚ի մախաղ կերակրոյն իւրոյ: Եւ ելին երկոքին
՚ի միասին ըստ սովորութեանն իւրեանց, և անցին նոքա
ըստ բանակն, և շրջեցան եկին ընդ ձորն. և ելին նոքա ՚ի
լեառնն Բետիղուայ. 13 և եկին նոքա ՚ի դրունս քաղաքին:
Եւ ասէ Յուդիթ ՚ի հեռաստանէ ցպահապանս դրանցն.
Բացէք բացէք արդ զդրունսդ, զի ընդ մե՛զ է Տէր Աստ-
ուած մեր, արասցէ ևս զօրութիւն յԻսրայէլի, և ՚ի բեկումն
թշնամեաց մերոց. որպէս և արա՛ր այսօր: 14 Եւ եղև իբ-
րև լուան արք քաղաքին նորա զձայն նորա, փութացան
իջանել ՚ի դրունս քաղաքին իւրեանց. և կարդացին նո-
քա զքահանայսն և զծերս ժողովրդեանն: 15 Եւ ժողովեցան
՚ի փոքուէ մինչև ցմեծամեծս, քանզի զարմացեալ էին նո-
քա յոյժ ընդ գնալն նորա: Եւ բացին զդուռն քաղաքին,
և առին զնոսա ՚ի ներքս. 16 և լուցին զլապտերս իւրեանց,
և կացին շուրջ զնոքօք: 17 Եւ ասէ Յուդիթ բարձրաձայն
բարբառով. Ո՛րդիք Իսրայէլի օրհնեցէք զԱստուած, 18 որ ո՛չ
մերժեաց զողորմութիւն իւր ՚ի տանէս Իսրայէլի. այլ եհար
վանեաց զթշնամիս մեր ՚ի ձեռն իմ ՚ի գիշերիս յայսմիկ:
19 Եւ եհան զգլուխն ՚ի մախաղէն և եցոյց նոցա. և ասէ
ցնոսա. Ահաւասիկ գլուխն Հողոփեռնեայ զօրագլխի զօ-
րացն Ասուրայ. և ահա վարագոյրքն պատուականք ընդ
որով անկեալ դնէր յարբեցութեան իւրում՝ և սատակեաց
զնա Տէր Աստուած ՚ի ձեռն կնոջս: 20 Կենդանի՛ է Տէր որ
պահեաց զիս ՚ի ճանապարհին յայնմիկ յորում գնացին. զի
խաբեաց զնա տեսիլ երեսաց իմոց ՚ի կորուստ նմին, և ո՛չ
արար նա ընդ իս պղծութիւն ՚ի նախատինս անձին իմոյ:
22 Եւ գոհացան ամենայն ժողովուրդքն, և խոնարհեալ եր-
կի՛ր պագին Աստուծոյ. և ասեն միաձայն ամենեքին. Օր-
հնեա՛լ ես դու Տէր Աստուած մեր, որ յամօ՛թ արարեր այ-
սօր զթշնամիս ժողովրդեան քոյ: 23 Եւ ասէ Ոզիա ցՅուդիթ.
Օրհնեալ ես դու դուստր՝ յԱստուծոյ բարձրելոյ, քան զա-
մենայն կանայս որ ՚ի վերայ երկրի. 24 և օրհնեալ Տէր Աստ-
ուած որ արար զերկինս և զերկիր. որ յաջողեացն քեզ ՚ի
վերայ գլխոյ իշխանիդ այդորիկ թշնամւոյ մերոյ: 25 Եւ ո՛չ
պակասեսցէ անունդ քո ՚ի մարդկանէ, առ ՚ի յիշելոյ զքեզ
առաջի Աստուծոյ մինչև յաւիտեան. և արասցէ զքեզ Տէր
Աստուած իմ ՚ի բարձրութիւն անձին քո. և այցելո՛ւ լի-
ցի քեզ ՚ի բարիս. փոխանակ զի ո՛չ խնայեցեր դու յանձն
քո վասն տառապանաց ազգի մերոյ. այլ խնդրեցեր զվրէժ
կործանման հարուածոցս մեր. գնացեալ քո ուղիղ զճանա-
պարհս առաջի Տեառն մերոյ: 26 Եւ ասէ ամենայն ժողո-
վուրդն. Եղիցի՛ եղիցի:

14 Եւ ասէ Յուդիթ ցնոսա. Լուարո՛ւք դուք ինձ եղ-
բարք զոր ասեմս ձեզ. և առէք զգլուխս զայս, և կա-
խեցէք զսա առաջի մահարձանաց պարսպաց քաղաքիս:
2 Եւ եղիցի յորժամ մերկասցի առաւօտն և ծագեսցէ արե-
գակն յերկիր, վառեցարո՛ւք ամենայն արք զօրաւորք պա-
տերազմի, և կացուցանիցէք ՚ի վերայ ձեր զօրավարս,
և ելանիցէք արտաքոյ քաղաքիս, իբրև թէ իջանիցէք ՚ի
դաշտ անդր ՚ի թև մի պարսկապանա՛ց որդւոցն Ասուր.
և անդր մի՛ իջանիցէք. 3 այլ խռո՛վ հարկանիցէք նոցա. և
նոքա առցեն զզէնս իւրեանց, և գնասցեն ՚ի բո՛ւն բա-
նակն իւրեանց, և յարուցանիցեն զզօրագլուխսն Ասուր. և
ժողովեալք դիմեսցեն ՚ի խորանն Հողոփեռնեայ, և զնա
ո՛չ գտանիցեն. 4 և անկանիցի ՚ի վերայ նոցա ա՛հ, և
՚ի փախուստ դարձցին նոքա յերեսաց ձերոց: 5 Եւ դուք
զկնի՛ մտեալ, և ամենայն բնակիչք սահմանացս Իսրայէ-
լի՝ տապա՛ստ արկեալ վանիջիք զնոսա յամենայն ճանա-
պարհս նոցա: Եւ արդ մինչչև՛ արարեալ զայս, կոչեցէք
առ իս զԱքիովր Ամոնացի, զի տեսցէ զայս որ ընդ ո՛տն
եհար զտունս Իսրայէլի. որ կապեացն զնա, և ե՛տ ածել
այսր ՚ի մահ: Եւ կարդացին զԱքիովր ՚ի տանէն Ոզիայ: Եւ
իբրև եկն ետե՛ս նա զգլուխն Հողոփեռնեայ ՚ի ձեռն ա՛ռն
միոջ ՚ի ժողովրդեանն, անկա՛ւ ՚ի վերայ երեսաց իւրոց՝ և
թաւալեցաւ: Եւ իբրև անդրէն զօրացաւ, անկեալ առ ոտս
Յուդթայ՝ երկի՛ր եպագ նմա՝ և ասէ. Օրհնեա՛լ ես դու յա-
մենայն բնակութիւնս Յուդայ. և ընդ ազգս ամենայն ուր և
լսիցեն զանուն քո զարմասցին. և արդ՝ պատմեա՛ դու ինձ,
ո՛րպէս արարեր յաւուր յայսմիկ: Եւ պատմեաց նմա Յուդիթ
առաջի ամենայն ժողովրդեանն իւրոյ, զոր էր նորա արար-
եալ յօրէ յայնմանէ յորում ել նա մինչև ցայս ժամ: Եւ իբրև
դադարեա՛ց Յուդիթ ՚ի խօսից իւրոց, աղաղակեաց ժո-
ղովուրդն մեծաձայն փառաւորե՛լ զԱստուած ՚ի քաղաքին
իւրեանց: 6 Եւ իբրև ետես Աքիովր զայն ամենայն զոր արար
Աստուածն Իսրայէլի, հաւատա՛ց յԱստուած ամենայն սրտիւ
իւրով. և թլփատէր ՚ի մարմին անթլփատութեան իւրոյ, և
յաւելաւ նա ՚ի տունն Իսրայէլի մինչև ցա՛յս օր: 7 Եւ յորժամ
ծագեաց առաւօտն, կախեցին զգլուխն Հողոփեռնեայ ՚ի
պարսպէ՛ անտի. և վառեցաւ ամենայն այր զզէն իւր. և ե-
լին նոքա առնել զայն ընդ անցս կողմանն ՚ի վերայ լերինն:
Եւ որդիքն Ասուր իբրև տեսին զնոսա՝ ա՛զդ արարին նոքա
առ առաջնորդս իւրեանց, և եկին նոքա առ զօրագլուխս և
առ իշխանս և առ հազարապետս նոցա. 8 և դիմեցին նո-
քա ՚ի խորանն Հողոփեռնեայ, և ասեն ցսենեկապետ նո-
րա. Արդ մուտ յարո՛ զտէրդ մեր. զի իշխեցին ծառայքն
՚ի վերայ մեր ՚ի պատերազմ. զի սատակեսցուք զնոսա ՚ի
սպառ: 13 Եւ եմուտ Բագու և բախեա՛ց զդուրս սենեկին.
քանզի կարծէր թէ ՚ի քո՛ւն իցէ հանդերձ Յուդթաւ: 14 Իբ-
րև ո՛չ ոք ետ նմա պատասխանի, քաջալերեալ եմուտ ՚ի
ներքս ՚ի սենեակն, և ետես զի անկեա՛լ կայր ՚ի վերայ
գետնոյն մե՛րկ, և գլուխն իւր բարձեալ էր ՚ի նմանէն: Եւ
գոչեաց Բագու ձայնիւ մեծաւ, և լալո՛վ և ողբմամբ յոյժ, և
պատառեա՛ց նա զպատմուճան իւր. 15 և եմուտ նա ՚ի սեն-
եակն Յուդթեայ՝ և ո՛չ եգիտ զնա. և ել ընթացա՛ւ նա առ
զօրսն և ասէ. 16 Ապստամբեցին ծառայքն, զի արար ամօթ
նախատանաց կի՛ն մի Հեբրայեցի տան արքայի Նաբուքո-
դոնոսորայ, զի ահաւասիկ Հողոփեռն յերկի՛ր կործանեալ,
և գլուխ իւր չէ՛ առ նմա: 17 Եւ իբրև լուան զայս բանս իշ-
խանք զօրացն Ասուրայ, պատառեցին ամենեքեան զպատ-
մուճանս իւրեանց և երկեան յոյժ. 18 և գոչեցին նոքա ՚ի մէջ
բանակին:

15 Եւ իբրև լուան որք ՚ի վրանսն էին, յիմարեցան վասն
իրացն որ եղեն: 2 Եւ անկաւ ՚ի վերայ նոցա ա՛հ և դողումն
յոյժ. և ապա ո՛չ մնացին ամենևին ա՛յր ընկերի իւրում: 3 Եւ
հեղեալք զբաղեալք առ հասարակ ՚ի փախո՛ւստ դարձան
՚ի դաշտակողմանն և ՚ի լեռնակողմանն 4 շուրջ զԲետիղ-
ուա. և դարձեալ անտի փախստեայք լինէին: Եւ ապա ա-
մենայն այր պատերազմօղ որդւոցն Իսրայէլի յարձակեցան
՚ի վերայ նոցա: 5 Եւ առաքեաց Ոզիա ՚ի Բետմեսթէմ, և ՚ի
Քոբա, և ՚ի Կովլա, և յամենայն սահմանս Իսրայէլի աւե-
տաւորս վասն իրացն որ եղեն. զի ամենեքին առ հասարակ
ժողովեսցին և մտցեն զհետ նոցա սատակե՛լ զնոսա: 6 Եւ
իբրև լուան որդիքն Իսրայէլի, ամենեքեան առ հասարակ
յարձակէին անկանէին ՚ի վերայ նոցա, և կոտորէին հար-
կանէին զնոսա մինչև ՚ի Քոբա. սոյնպէս և Երուսաղեմա-
ցիքն առնէին: Եւ ամենեքեան որք ՚ի լեռնակողմանցն եկ-
եալ էին՝ պատմեցին նոցա որ եղև ՚ի բանակին. և որք ՚ի
Գաղաադն էին, և որք ՚ի Գալիլեայ, հասանէին հարկանէին
վանէին զնոսա, մինչև անցուցանէին զնոսա ընդ Դամաս-
կոս և ընդ սահմանս նորա: 7 Եւ այլ բնակիչքն Բետիղուայ
ելանէին անկանէին ՚ի վերայ բնակչացն բնադրացն Ասու-
րայ, աւա՛ր հարկանել՝ ժողովել զառ զապուռ բանակացն,
յորս յղփացան լցան մեծացան յոյժ բնակիչքն Բետիղուայ:
8 Եւ որդիքն Իսրայէլի դարձան ՚ի կոտորածէ անտի. և
սկսանէին ժողովել զկապուտ կողոպուտ զանկելոցն: Եւ

---

6 Ոմանք յաւելուն. Եւ եկաց Յուդիթ յաղօթս առ գահոյս նո-
րա: 11 Ոմանք. Եւ յետ ժամու միոյ... նաժշտին իւրոյ զգլ": 13 Այլք.
Զօրութիւնս յԻսրայէլի: 15 Ոմանք. Մինչև ՚ի մեծամեծս: Բազումք.
Նոքա յոյժ ընդ գալն նորա: 18 Ոմանք. Վանեաց զթշնամիս ձեր: 23
Ոմանք. Կանայս ՚ի վերայ երկրի: 25 Այլք. Զի ո՛չ պակասեսցէ ա": 
Ոմանք. Ազգի մերում. այլ խնդրեցեր դու զվրէժ... հարուածոցս
մերոց, գնացեալքս ուղիղ: 14.2 Յօրինակին. Իբրև թէ իջանիցէ ՚ի:

5 Ոմանք. Եւ իբրև եկն և ետես նա... ՚ի ձեռին առն: 7 Ոսկան.
Եւ վառեցաւ ամենայն այր ՚ի զէն իւր: Ոմանք. Ազդ արարին նոքա
յառաջնորդս իւ": 14 Այլք. Եւ լալով և ողբմամբ մեծաւ յոյժ: 15
Ոսկան. Նա առ զիւրսն և ասէ: 17 Ոմանք. Լուան զայն բանս: 15.5
Ոմանք. Եւ ՚ի Քոբա, և ՚ի Կովա, և յամենայն: 7 Ոսկան. Զառ և
զապուր բանակացն... լցան և մեծացան:

գեօղքն և ագարակքն լեռնակողմանցն և դաշտականացն
եկեալ առնուին զմնացորդս յոյժ աւարացն: 9 Եւ Յովակիմ
քահանայ մեծ՝ և ծերակոյտ որդւոցն Իսրայէլի որք բնակ-
եալ էին յԵրուսաղէմ, եկին տեսանել զբարութիւնսն զոր
արար Տէր Աստուած Իսրայէլի, և տեսանել զՅուդիթ՝ և
խօսել ընդ նմա զխաղաղութիւն: 10 Եւ իբրև մտեալ տեսին
զնա՝ օրհնեցին զնա ամենեքեան միաբան՝ և ասեն ցնա.
Դո՛ւ բարձրութիւն Երուսաղեմի. դո՛ւ ցնծութիւն Իսրայէլի.
դո՛ւ պարծանք ազգիս մերոյ. 11 զի արարեր զայս ամենայն
բարութիւնս ձեռօք քովք Իսրայէլի. և հաճեցա՛ւ ընդ նո-
սա Աստուած. և օրհնեա՛լ եղիջիր դու յամենակալէն Աս-
տուծոյ մինչև յաւիտեան: 12 Եւ ասէ ամենայն ժողովուրդն.
Եղիցի՛: 13 Եւ ժողովուրդն կրէին զաւար բանակին զաւուրս
երեսուն: Եւ ետուն Յուդթայ զխորանն Հողոփեռնեայ, և
զամենայն զարծաթ խորանին՝ և զգահոյսն. և զամենայն
զսպասսն զոսկւոյ և զարծաթոյ նորա: Եւ նորա առեալ
կուտէր զայն 'ի սայլս իւր, և 'ի վերայ գրաստուց իւրոց
և բերէր 'ի ներքս 'ի քաղաքն: 14 Եւ եկին առ նա ամե-
նայն կանայք որդւոցն Իսրայէլի տեսանե՛լ զնա. և օրհնե-
ցին զնա. և նուագէին նմա ե՛րգս պարուց: Եւ առեալ նո-
րա ոստս արմաւենեաց և ձիթենեաց ծաղկօք հանդերձ, և
տա՛յր նոցա: 15 Եւ ա՛յլ ևս կանայք մեծամեծք տեղեացն գա-
յին գունդագունդք՝ գովե՛լ զնա: Եւ ամենայն Իսրայէլ զկնի՛
երթային նոցա վառեալք և կազմեալք՝ պսա՛կս գունակս
գունակս 'ի գլուխս իւրեանց. և օրհնութիւնք ամենեցուն
'ի բերանս իւրեանց փառաւորե՛լ զԱստուած:
16 Եւ սկսաւ Յուդիթ օրհնել զօրհնութիւնս զայս. և ամե-
նայն Իսրայէլ նուագէին ընդ նմա: 2 Եւ ասէ Յուդիթ. Երգե-
ցէ՛ք Տեառն թմբկօք, և օրհնեցէ՛ք զնա ծնծղայիւք. և ուղ-
ղեցէ՛ք նմա երգս և օրհնութիւնս: Բա՛րձր արարէ՛ք զնա և
կարդացէ՛ք զանուն նորա: 3 Զի Աստուած խորտակէ զպա-
տերազմունս Տէր. 4 և զբանակս նորա 'ի մէջ ժողովրդոց.
փրկեաց զիս 'ի ձեռաց հալածչաց իմոց: 5 Ե՛կն Ասուր 'ի
լերանցն հիւսւոյ. ե՛կն 'ի բիւրաւորս զօրօք իւրովք, որոց
բազմութիւնն ծածկեաց զձորս. և բազմութիւն երիվարաց
նորա ծածկեաց զբլուրս: 6 Եւ ասաց հրձի՛գ առնել զսահ-
մանս իմ, և զերիտասարդս իմ ընդամթո՛ւր հարկանել. և
զտղայս իմ աւա՛ր հարկանել. և զկուսանս իմ վարե՛լ 'ի գե-
րութեան: 7 Տէր Աստուած ամենակալ կործանեա՛ց զնոսա 'ի
ձեռն կնոջ: 8 Զի ո՛չ անկաւ հզօրն նոցա յերիտասարդաց, և
ո՛չ որդիք տիտանացւոց սատակեցին զնա, և ո՛չ բարձունք
հսկայք յարեան 'ի վերայ նորա. այլ Յուդիթ դուստր Մե-
րարեայ, գեղեցկութիւն երեսաց յո՛յժ խաբեաց զնա: 9 Զի
մերկացաւ զհանդերձս այրութեան իւրոյ՝ 'ի բարձրութիւն
այնոցիկ որք կափեալք էին յԻսրայէլի: 10 Եւ օծ զերեսս իւր
յանոյշ իւղոց. և յօրինեաց զգլուխ իւր զարդու իւրով. և
ա՛ռ զշղաշատեան 'ի խաբէութիւն նորա. 11 և 'ի գեղ ո-
տից կօշկաց նորա մոլորեցաւ սիրտ նորա. և գեղեցկու-
թիւն նորա գերեա՛ց զանձն նորա. և էանց դաշոյնն ընդ
փողս նորա: 12 Դողացա՛ն Պարսիկք 'ի քաջարտութենէ նո-
րա. և Մա՛րք 'ի քաջութենէ նորա խռովեցան: 13 Յա՛յս ժամ
աղաղակեցին տառապեալքն իմ, և գոչեցին հիւանդքն իմ,
և յաղթեցա՛ն. բարձրացուցին զձայնս իւրեանց և լքան:
14 Որդիք աղջկանց խոցոտեցին զնոսա. և որպէս զորդիս
տնանկաց պանդխտաց կոտորէին. և կորեա՛ն 'ի պատե-
րազմէ Տեառն իմոյ: 15 Օրհնեցից զՏէր Աստուած իմ յօր-
հնութիւն նոր: 16 Տէր մե՛ծ ես դու և փառաւորեալ. սքան-
չելի՛ ես զօրութեամբ անպակաս: 17 Քե՛զ ծառայեսցեն ա-
մենայն ստացուածքս քո. զի ասացե՛ր և եղեն. առաքեցեր
զհոգի՛դ քո՝ և ստացան և շինեցա՛ն, և ո՛չ ոք է որ ընդ-
դէմ կայ ձայնի քոյ: 18 Քանզի լերինք 'ի հիմանէ ջրովքն
հանդերձ սասանեցան. և վէմք առաջի երեսաց քոց իբրև
զմոմ հալեցան. և երկիւղածա՛ց քոց քաւիչ լինիս դու նո-
ցա: Եւ ամենայն սակաւիկ զոհ 'ի հո՛տ անուշութեան, և
ճարպն՝ քեզ յողջակէզս է: 19 Այլ որ երկիւղածն է՝ նա
մե՛ծ է յաւիտեան: 20 Վա՛յ ազգացն այնոցիկ որք յարուցեալ
են 'ի վերայ ազգիս մերոյ. և Տէր ամենակալն խնդրեսցէ
վրէ՛ժ 'ի նոցանէ յաւուրն դատաստանի: 21 Եւ տայ հուր և
զորդունս 'ի մարմինս նոցա, և լացցեն նոքա 'ի սգման
մինչև յաւիտեան: 22 Եւ իբրև չոգան նոքա յԵրուսաղէմ, եր-
կի՛ր պագին Աստուծոյ. և յորժամ սրբեցաւ ժողովուրդն,
հանին զողջակէզսն իւրեանց, և զկամայականսն և զպա-
տարագս իւրեանց: 23 Եւ եհան նուիրեա՛ց Յուդիթ զամենայն
զկահն և զկարասին Հողոփեռնեայ, և ե՛տ զայն 'ի նուէրս
Տեառն Աստուծոյ: 24 Եւ ուրա՛խ լինէր ժողովուրդն յԵրու-
սաղէմ դէմ յանդիման սրբոցն զամիսս երիս: Եւ Յուդիթ
մնա՛յր ընդ նոսա: 25 Եւ յետ աւուրցս այսոցիկ՝ չուեցին գնա-
ցին իւրաքանչիւր 'ի ժառանգութիւնս իւրեանց: Եւ Յուդիթ
գնաց 'ի Բետիղուա, և դարմանէր զտուն իւր: 26 Եւ եղև
'ի ժամանակէ անտի յայնմանէ փառաւորէր անուն նորա
ընդ ամենայն երկիր: 27 Եւ բազումք ցանկացան նմա զա-
մենայն աւուրս կենաց նորա, յորմէ հետէ մեռաւ Մանասէ
այրն նորա և յաւելաւ 'ի ժողովուրդ իւր: 28 Եւ լինէր Յուդիթ
մեծացեալ և պատուեալ օր քան զօր: Եւ ծերացա՛ւ նա ան-
դէն 'ի տան առնն իւրոյ ամս հարիւր հինգ. և ազատեաց
նա զնաժիշտն իւր: Եւ մեռաւ նա 'ի Բետիղուա. և թաղե-
ցին զնա 'ի շիրմի առն իւրոյ Մանասէի: 29 Եւ սո՛ւգ առին 'ի
վերայ նորա ամենայն տունն Իսրայէլի զաւուրս եւթն: Եւ
բաժանեա՛ց նա զինչս իւր՝ մինչչև՛ մեռեալ էր ինքն՝ ամե-
նեցուն որ ազգականք էին Մանասէի առն նորա, և ամե-
նեցուն որք մերձաւորք էին իւր, սո՛յնպէս բաժանեաց: 30 Եւ
ո՛չ ոք էր որ զարհուրեցուցանէր զորդիսն Իսրայէլի յաւուրս
Յուդթայ, և յե՛տ մեռանելոյ նորա զաւուրս բազումս:

Կատարեցաւ Յուդիթ:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ ՏՈՎԲԻԹԱՅ

Տովբիթ 'ի գերելոցն է Սաղմանասարայ, և բնակեաց 'ի Նի-
նուէ. իսկ յետ այնր իբրև Սենեքերիմ դարձաւ ամօթով յԵրու-
սաղեմէ, զբազումս 'ի հրէիցն սպանանէր 'ի Նինուէ, զորս և
թաղէրն Տովբիթ: Վասն որոյ խնդրեաց զնա սպանանել Սենե-
քերիմ. յորոյ երեսաց փախուցեալ, յետ սպանման Սենեքերիմայ
յորդւոց իւրոց՝ դարձաւ Տովբիթ 'ի Նինուէ: Գուշակեաց զաւերն
Երուսաղեմի, և զհրկիզութիւն տաճարին 'ի Նաբուքոդոնոսորայ,
ևս և զդարձ գերւոյն, և զվերստին շինումն տաճարին. զբառնիլ
կռապաշտութեանն յերկրէ, և զդառնալն յԱստուած՝ հեթանո-
սաց: Պատուէր ետ որդւոյ իւրոյ Տուբիայ ելանել 'ի Նինուէէ.
զի կործանելոց է ըստ բանին Յովնանու. որ եղև առ Տուբիաւ.
զի գերեալ կործանեցաւ Նինուէ 'ի Նաբուքոդոնոսորայ՝ որպէս
սպառնացան Նաւում: Եւ կանխագոյն է իրքս Տովբիթայ քան
զգերիլն Երուսաղեմի:

## ՏՈՎԲԻԹ

1 Գիրք բանից Տովբիթայ որդւոյ Տովբեէլեայ. որդւոյ Անա-
նիելեայ. որդւոյ Անաւեղայ. որդւոյ Գաբայեէլայ. 'ի զաւակէ
Սասիէէլայ. յազգէ Նեփթաղիմայ: 2 Որ գերեցան յաւուրս Ե-
նեմեսարու թագաւորին Ասորեստանեայց 'ի Թեզբուէ. որ է
ընդ աջմէ կողմանցն Նեփթաղիմայ 'ի Գալիլեայ 'ի վերայ
Ասէի: 3 Ես Տուբիթ զճանապարհս ճշմարտութեան գնա-
ցի, և յարդարութեան զամենայն աւուրս կենաց իմոց. և
ողորմութիւնս բազումս արարի ես եղբարց իմոց՝ և ազգին
իմում որ ընդ իմն էին յերկրին Ասորեստանեայց 'ի Նինուէ:
4 Եւ յորժամ էի ես 'ի գաւառին իմում յերկրին Իսրայէլի, և
մինչդեռ մանուկն էի, ամենայն ազգն Նեփթաղիմայ հօրն
իմոյ մերժեցան 'ի բա՛ց եղեն 'ի տաճարէն Երուսաղեմէ.
զոր ընտրեալն էր յամենայն ազգացն Իսրայէլի զոհե՛լ յա-
մենայն տոհմս. և սրբեցաւ տաճարն բնակութեան Բարձ-
րելոյն, և շինեցաւ յամենայն աւուրս յաւիտենից: 5 Եւ ա-
մենայն ազգքն որք ապստամբք էին՝ 'ի զոհելն Բահաղու
երնջուն, և տունն Նեփթաղիմայ հօրն իմոյ: 6 Եւ ես մի-
այն երթայի բազում անգամ յԵրուսաղէմ 'ի տօնս տարե-
կանաց, որպէս և գրեալ է ամենայն Իսրայէլի հրամանա՛

8 Ոսկան. Զկապուտն և զկողոպուտ անկելոցն... և դաշտականաց. և եկեալ առ": 11 Ոմանք. Օրհնեալ լիջիր դու յամէ": 13 Ոմանք. Եւ 'ի վերայ գրաստուց իւր՝ և բերին 'ի ներքս: 16.8 Ոմանք. Դուստր Մերարայի: Ոսկան. Գեղեցկութեամբ երեսաց: 10 Ոմանք. Յանոյշ իւղոյ... զարդու իւղով. և ա՛ռ նա զշղաշատեան: 13 Ոսկան. Յայնժամ աղաղակէ": 15 Ոմանք. Յօրհնութիւն 'ի նոր: 17 Յօրինակին. Զհոգիդ քո. նորմրաւբեղով նշանակի: 18 Բազում. Զի ամենայն սակաւիկ զոհ:

21 Օրինակ մի. Եւ լացցեն նոքա 'ի սքումն: 29 Ոմանք. Մերձաւորքն էին իւրոյ: Ոմանք. Այնպէս բաժանեաց: 'Ի լուսանցն, ոմանք. Կատարեցաւ Յուդիթ գիրքս: 1.1 Ոսկան. 'Ի զաւակէն Ասիելեայ: 4 Այլք. Յերկրին Իսրայէլի... 'ի բաց եղեն 'ի տաճարէն Երուսաղեմի: Ո–ր Ոսկան. Եւ 'ի բաց եղեն: 5 Ոսկան. Եւ ամենայն